

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---


Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78։

## СОДЕРЖАНИЕ








**Адрес редакции—Ереван, ЦК КП Армении, II этаж, ком. 60, тел. 2-59-78.**




# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹՅԱՆ ՓՈՓՈԽՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

### ՍՄԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ՔԱՐՏՈՒՂԱՐ ԸՆԿԵՐ Ֆ. Ռ. ԿՈԶԼՈՎԻ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ XXII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻՆ

*Մեր համագումարում ՍՄԿՊ Կանոնադրության փոփոխությունների հարցի քննարկումը, ասում է ընկ. Ֆ. Ռ. Կոզլովը, միանգամայն օրինաչափ է։ Նոր Ծրագիրը պարտիային, բոլոր կոմունիստներին առաջադրում է նոր, ավելի բարձր պահանջներ, որոնք բխում են կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման խնդիրներից։*

*Մեծ Լենինը սովորեցրել է, որ ամեն անգամ, երբ պարտիայի առջև ծառանում են նոր խնդիրներ, նա պետք է մշակի այնպիսի կազմակերպական ձևեր, իր ներքին կյանքի այնպիսի կանոններ ու նորմաներ, որոնք համապատասխանեն նրա գործունեության պատմական պայմաններին և ա-*

պահովեն այդ խնդիրների կատարումը։ Այդ դրույթով էլ հենց ղեկավարվել է Կենտրոնական Կոմիտեն՝ ՍՄԿՊ Կանոնադրության նախագիծը մշակելիս, որը մտցված է համագումարի քննարկմանը։

Արդի պայմաններում, շարունակում է ղեկուցողը, անչափ մեծանում է յուրաքանչյուր կոմունիստի դերը և նրա պատասխանատվությունը պարտիայի ու ժողովրդի առջև, բարձրանում է պարտիայի անդամի կոչումը։ Ելնելով Ծրագրի այդ դրույթներից, Կանոնադրության նախագծում որոշված են կոմունիստի հիմնական պարտականություններն ու իրավունքները, շարադրված են կազմակերպական այն նորմաները, որոնք կարգավորում են ՍՄԿՊ-ի մեջ ընդունելության և վտարման կարգը։

Պարտիայի անդամության հարցը պարտիական շինարարության արմատական հարցերից մեկն է։ Կանոնադրության նախագծի առաջին պարագրաֆը ամբողջովին պահպանում է պարտիայի անդամության լենինյան սկզբունքը։ Այստեղ նորն այն սահմանումն է, որ պարտիայի անդամ կարող է լինել «Կոմունիզմի կառուցմանը ակտիվորեն մասնակցող» ՍՍՌՄ ամեն մի քաղաքացի։ Այդ պահանջը համապատասխա-



նում է պարտիայի կյանքի նոր պայմաններին, դա կարևորագույն չափանիշն է այն բանի, թե ով կարող է ՍՄԿՊ անդամի կոչմանը արժանի լինել կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում։ Կոմունիստի պարտքն է, այնուհետև նշում է ղեկուցողը, անդուլ կերպով նպաստել կոմունիստական հասարակարգի մարդու ձևավորմանը ու դաստիարակությանը, վճռական պայքար մղել բուրժուական գաղափարախոսության ամեն մի դրսևորման, մասնավոր սեփականատիրական հոգեբանության մնացուկների և անցյալի մյուս վերապրուկների դեմ, օրինակ լինել կոմունիստական բարոյականության նորմաների կիրառման գործում, միշտ և ամեն բանում հասարակական շահերը բարձր դասել անձնական շահերից։

Պարտիայի անդամի կարևորագույն պարտականություններից մեկը քննադատության և ինքնաքննադատության զարգացումն է, պայքարը պարադայնության, գոռոզամտության, ինքնահանգստացման, բյուրոկրատիզմի, տեղայնության դեմ։

Մեր պարտիայի ուժն ու անպարտելիությունը նրա շարքերի միասնության և անխորտակելի միաձուլության մեջ է, գի-

տակցական երկաթյա կարգապահության մեջ։ Պարտիայի անդամը պարտավոր է ըստ ամենայնի պահպանել պարտիայի գաղափարական ու կազմակերպական միասնությունը, ցուցաբերել զգոնություն, թույլ չտալ, որ պարտիայի մեջ սողոսկեն կոմունիստի բարձր կոչմանը անարժան մարդիկ։

Պարտիական պատժի ծայրահեղ միջոցի չհիմնավորված կիրառման դեմ երաշխիք ստեղծելու և կոմունիստի բախտի համար պարտիական կազմակերպությունների պատասխանատվությունը բարձրացնելու նպատակով, նշում է զեկուցողը, Կանոնադրության նախագծի մեջ մտցվել է նոր դրույթ, պարտիայից վտարելու մասին սկզբնական կազմակերպության որոշումը ընդունված է համարվում, եթե դրա օգտին քվեարկում է ոչ թե պարզ մեծամասնությունը, այլ պարտիայի՝ ժողովին ներկա գտնվող անդամների երկու երրորդից ոչ պակաս մասը։

Կանոնադրության նախագծում հետևողականորեն անցնում է պարտիայի կյանքի դեմոկրատական հիմունքների ընդլայնման գաղափարը, որպես պարտիայի բոլոր կազմակերպությունների ակտիվության ու ինքնագործունեության հետագա բարձրացման և բոլոր կոմունիստներին պարտիական աշ-



խույժ, ստեղծագործական աշխատանքի ներգրավելու վճռական պայման։

Պարտիայի կազմակերպական կառուցվածքի անսասան հիմքն է կազմում դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքը։ Դա կազմակերպվածությունը և խստագույն կարգապահությունը ներդաշնակորեն զուգակցում է ներպարտիական ամենալայն դեմոկրատիայի հետ։ Պարտիայի կուտակած փորձի հիման վրա Կանոնադրության նախագիծը զարգացնում է պարտիական շինարարության լենինյան այդ անսասան սկզբունքը։

Չափազանց կարևոր նշանակություն ունի, ասում է ընկ. Կոզլովը, Կանոնադրության նախագծի այն դրույթը, որ պարտիական ղեկավարության բարձրագույն սկզբունքը ղեկավարման կոլեկտիվայնությունն է, որը պարտիային, նրա բոլոր օրգաններին ապահովում է միակողմանի, սուբյեկտիվ որոշումներ ընդունելուց և գործողություններից։

ՍՄԿՊ Ծրագրին համապատասխան Կանոնադրության նախագիծը նախատեսում է պարտիական կոմիտեների կազմի պարբերական նորացում և ղեկավարության հաջորդականություն։

Ներպարտիական դեմոկրատիայի հետա-

դա զարգացմանը համապատասխանում է, իրենց աշխատանքի մասին պարտիական կազմակերպություններին սիստեմատիկաբար ինֆորմացիա տալու՝ պարտիական օրգանների պարտականությունը, որը նախատեսված է Կանոնադրության նախագծով։

Պարտիան ուժեղ է իր անդամների ակտիվությամբ։ Կոմունիստը, ընդգծում է զեկուցողը, ոչ միայն կատարում է պարտիական վերադաս օրգանների որոշումները, այլև անձամբ, իր ուժերի չափով, մասնակցում է այդ որոշումների մշակմանը։ Ահա թե ինչու պետք է ապահովված լինի լիակատար հնարավորություն, որ պարտիական քաղաքականության հարցերը ազատորեն ու գործարար կերպով քննարկվեն և վիճելի կամ ոչ բավականաչափ պարզ հարցերի շուրջը դիսկուսիաներ անցկացվեն ինչպես առանձին կազմակերպություններում, այնպես էլ ամբողջ պարտիայի ներսում. դա էլ հենց իր արտացոլումն է գտել Կանոնադրության նախագծում։

Պարտիայի Կանոնադրության նախագծի կարևոր առանձնահատկությունը պարտիական տեղական օրգանների դերի բարձրացումն է, նրանց նախաձեռնության և ինքնուրույնության ընդլայնումը մարզի, երկ-



րամասի, ռեսպուբլիկայի առջև ծառացած տնտեսական-քաղաքական խնդիրների լուծման բնագավառում։ Միևնույն ժամանակ հարկավոր է ասել, ընդգծում է ընկ. Կոզլովը, որ ՍՄԿՊ-ն պարտիաների կամ պարտիաների կոմիտեների ֆեդերացիա չէ։ Դա կենտրոնացված կազմակերպություն է։

Պարտիան, այնուհետև ասում է ընկ. Կոզլովը, իրավունք չունի իր զինանոցից բացառել իր շարքերի գաղափարական և կազմակերպական միասնության համար պայքարի միջոցները։ Ուստի, Կանոնադրության մեջ երաշխիքներ են պահպանվում աննշան փոքրամասնության կողմից մեծամասնությանը իր կամքը պարտադրելու փորձերի դեմ, ինչպես նաև ֆրակցիոն խմբեր կազմելու փորձերի և պարտիան պառակտելու փորձերի դեմ։

Սովետական հասարակարգում, նշում է զեկուցողը, չի մնացել սոցիալական այնպիսի բազա, որը կարողանար սնուցել որևէ օպորտունիստական հոսանք պարտիայի ներսում։ Բայց առանձին անձանց կամ խմբերի գաղափարական տատանումների աղբյուրները դեռ լիովին չեն վերացված։ Լավ հայտնի է, թե պարտիայի XX համագումարի նշած լենինյան գծի կենսագործ-

մանը ինչպիսի կատաղի դիմադրություն էր փորձում ցույց տալ հակապարտիական ֆրակցիոն այն խումբը, որի մեջ մտնում էին Մոլոտովը, Կագանովիչը, Մալենկովը, Վորոշիլովը, Բուլգանինը, Պերվուխինը, Սաբուրովը և նրանց հարած Շեպիլովը։

Այդ խմբի մասնակիցները դավաճանեցին պարտիական կյանքի լենինյան սկզբունքներին։ Նրանք ձգտում էին ամեն գնով իրականացնել իրենց հակապարտիական դիտավորությունները, գլորվեցին մինչև այն տեղ, որ կազմակերպում էին գաղտնի խառնաժողովներ, նյութելով պարտիայի և երկրի ղեկավարությունը իրենց ձեռքը վերցնելու, պարտիայի քաղաքականությունը փոխելու պլաններ։ Մոլոտովը և մյուսները ուզում էին վերադարձնել անհատի պաշտամունքի առաջացրած արատավոր մեթոդների ու գործողությունների տիրապետություն՝ մեր պարտիայի ու երկրի համար ծանր այն ժամանակները, երբ ոչ ոք չէր ապահոված կամայականությունից և ռեպրեսիաներից։

Փաստերը ցույց են տալիս, ասում է զեկուցողը, որ հակապարտիական խմբի կազմակերպիչները դեռ մինչև օրս ձգտում են պաշտպանել իրենց արատավոր հայացք-



ները։ Այդ տեսակետից մեծ համառություն է ցուցաբերում հատկապես Մոլոտովը։ Նա այնտեղ է հասել, որ նույնիսկ ՍՄԿՊ նոր Ծրագիրը բնութագրել է որպես հակառևոլյուցիոն՝ իր ոգով։ Նրա, Մոլոտովի, պետքն էլ չէ, որ Ծրագիրը համաժողովրդական քննարկման ժամանակ արժանացավ պարտիայի ու ժողովրդի, եղբայրական մարքս-լենինյան պարտիաների հավանությանը, որ երկրագնդի բոլոր ազնիվ մարդիկ այն համարում են մեր դարաշրջանի կոմունիստական մանիֆեստը։

Անդրադառնալով ինտերնացիոնալիզմի և պարտիական ղեկավարության լենինյան սկզբունքներից Ալբանիայի Աշխատանքի պարտիայի ղեկավարների հեռանալու փաստերին, ընկ. Կոզլովը ասում է.

— Ինչ պետք է աներ Կենտրոնական Կոմիտեն այն պայմաններում, երբ սպառվել էին աղանդավորական գործողություններից հրաժարվելու համար ալբանական ղեկավարությանը համոզելու բազմաթիվ փորձերը և երբ, այդ ղեկավարության մեղքով, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներից նահանջելու նրա գործարար ուղին հայտնի դարձավ մեր գաղափարական հակառակորդներին։ Ակնհայտ է, որ այդ իրա-

դրության մեջ ալբանական լիդերների հակալենինյան վարքագծի սկզբունքային դատապարտումը, առաջացած տարաձայնությունները հաղթահարելու ուղիները գտնելու բացահայտ կոչը միակ ճիշտ, լուրջ մարքս-լենինյան մոտեցումն են այդ հարցում։ Ուստի Կենտրոնական Կոմիտեն համագումարում իր հաշվետվության մեջ ասաց ողջ ճշմարտությունը Ալբանիայի Աշխատանքի պարտիայի ղեկավարության արատավոր դիրքի մասին։

Մենք պետք է հաստատապես ասենք, որ եղբայրական կոմունիստական ու բանվորական պարտիաների իսկական միասնություն հնարավոր է միայն մարքս-լենինյան սկզբունքային հիմքի վրա, և ոչ թե ալբանական ղեկավարության արատավոր գծի կողքով լռությամբ անցնելու հիման վրա։

Պարտիայի շրջանային, քաղաքային, օկրուգային, մարզային, երկրամասային (կազմակերպությունների և միութենական ռեսպուբլիկաների Կոմպարտիաների, նրանց ղեկավար օրգանների աշխատանքում, այնուհետև շարունակում է ընկ. Կոզլովը, գլխավորը պարտիայի քաղաքականության կենսագործումն է, պարտիայի համագումարների որոշումների, ՍՄԿՊ Կենտկոմի



դիրեկտիվների կատարման կազմակերպումը։ Այդ ընդհանուր խնդիրը Կանոնադրության նախագծում կոնկրետացվում է պարտիայի տեղական կազմակերպությունների և նրանց ղեկավար օրգանների հիմնական պարտականությունների ձևով։

Պարտիայի հիմնական օղակը, նշում է զեկուցողը, որտեղ կոմունիստը ձևավորվում է որպես գաղափարական, գիտակից, ակտիվ մարտիկ, հանդիսանում է սկզբնական պարտիական կազմակերպությունը։ Գլխավորը, որ այժմ կանգնած է սկզբնական պարտիական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, կոմունիստական հասարակական հարաբերությունների զարգացման համար մղվող պայքարն է, աշխատավորների կոմունիստական դաստիարակության հարցերը։

Այդ խնդիրների հաջող լուծման համար արտադրական և առևտրական ձեռնարկությունների, սովխոզների ու կոլտնտեսությունների սկզբնական կազմակերպությունները ունեն այնպիսի զորեղ և ներգործուն միջոց, ինչպիսին է ադմինիստրացիայի գործունեության վերահսկողության իրավունքը։ Կանոնադրության նախագծով այդ

իրավունքը այժմ տրվում է նաև նախագծային հիմնարկների, կոնստրուկտորական բյուրոների, անմիջականորեն արտադրության հետ կապված գիտահետազոտական ինստիտուտների սկզբնական կազմակերպություններին։

Պարտիան կկարողանա իր մեծ խնդիրները կատարել միայն այն դեպքում, եթե նա իր բոլոր անդամներին և սովետական բոլոր մարդկանց դաստիարակի կոմունիստական բարոյականության, բարձր գիտակցականության ու գաղափարայնության, աշխատասիրության ու կարգապահության, հասարակական շահերին նվիրվածության ոգով։ Այդ գործում վիթխարի դեր կխաղա Կանոնադրության մեջ մտցված՝ կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսը, որ ձևակերպված է ՍՄԿՊ Ծրագրում։ Այդ կոդեքսը կդառնա պարտիայի անդամի վարքագծի նորման, այն կամերտոնը, որով ինքը՝ կոմունիստը և պարտիական կազմակերպությունը կճշգրտեն և կգնահատեն պարտիայի իրենց ընկերների բարոյական հատկությունները։

Այսպիսով, Կանոնադրության նախագծի՝ սկզբնական կազմակերպություններին վերաբերող բոլոր դրույթները կոչված են էլ



ավելի բարձրացնել նրանց դերը, նրանց դարձնել էլ ավելի ակտիվ ու մարտունակ կոմունիզմի կառուցման մեծ խնդիրների լուծման գործում։

Մենք լիակատար հիմքով կարող ենք ասել, հայտարարում է ընկ. Կոզլովը, որ ՍՄԿՊ Կանոնադրության նախագծի քննարկմանը մասնակցել են ամբողջ պարտիան, բոլոր կոմունիստները։ Առանց բացառության պարտիական բոլոր ժողովներում, կոնֆերանսներում և համագումարներում Կանոնադրության նախագիծը արժանացել է միահամուռ հավանության։

Կոմունիստների առաջարկություններն ու դիտողությունները վերաբերում են պարտիայի հետագա զարգացման, ներպարտիական դեմոկրատիայի զարգացման, պարտիական կյանքի լենինյան նորմաների և սկզբունքների, պարտիայի անդամության շատ հարցերին, կոմունիստի պարտականություններին և իրավունքներին։

Ընկ. Կոզլովը կանգ է առնում մի շարք առաջարկությունների վրա, որոնց հիման վրա համապատասխան լրացումներ են մտցված Կանոնադրության նախագծի մեջ։

Կոմունիստները և անպարտականները Կանոնադրության նախագծի քննարկման

ժամանակ, նշում է զեկուցողը, արեցին քննադատական ոչ քիչ դիտողություններ, որոնք վերաբերում են տեղական պարտիական օրգանների գործունեությանը։ Միութենական ռեսպուբլիկաների Կոմպարտիաների Կենտկոմները, պարտիայի երկրկոմները և մարզկոմները, ասում է զեկուցողը, պետք է ուշի-ուշով քննության առնեն կոմունիստների կողմից տեղական պարտիական օրգանների հասցեին արված քննադատական բոլոր դիտողությունները, կոնկրետ առաջարկությունները և պատշաճ միջոցներ ձեռք առնեն թերությունները վերացնելու համար։

ՍՄԿՊ Կանոնադրությունը, որ կընդունվի պարտիայի XXII համագումարի կողմից, հայտարարում է ընկ. Կոզլովը, յուրաքանչյուր պարտիական կազմակերպության, յուրաքանչյուր կոմունիստի կօգնի որոշելու իր տեղը համաժողովրդական պայքարում, եռապատիկ եռանդով պայքարելու համագումարի որոշումների պրակտիկ կենսագործման համար։

---

# ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ԱԶԳԱՅԻՆ ՎԵՐԱԾՆՆԴԻ ՕՐԸ



Հայ ժողովուրդը պատրաստվում է տոնելու իր ազգային վերածննդի օրը՝ Հայաստանում սովետական կարգերի հաստատման 41-րդ տարեդարձը, պատրաստվում է աննախընթաց խանդավառությամբ ու ոգևորությամբ, որովհետև իր ազատ կյանքի հինգերորդ տասնամյակն է թևակոխում զինված դարաշրջանի մեծագույն փաստաթղթով՝ կոմունիստական հասարակարգի կառուցման Ծրագրով։

Ինչպես եղբայրական մյուս ռեսպուբլիկաներում, այնպես էլ մեր ռեսպուբլիկայում աշխատավորները անսահման հետաքրքրությամբ ուսումնասիրում են Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXII համագումարի նյութերը։ Պարտիայի նոր Ծրագրի մեծ գաղափարները իրենց անսովոր ուժով թափանցում են միլիոնավոր սրտեր, տիրապետում մարդկանց մտքերին։ Սովետական մարդիկ այն համարում





են իրենց հարազատ կենսական գործը, իրենց կյանքի վեհ նպատակը։ Եվ դա բնական է։ Քաղաքական և տեսական այդ մեծ փաստաթուղթը, որով ղեկավարվելու է պարտիան, իր մեջ մարմնավորում է մեր ժողովրդի ամենալուսավոր երազանքների ու նվիրական իղձերի իրականացումը՝ կոմունիստական հասարակարգի կառուցումը։

Կոմունիզմը նշանավորում է մարդկության իսկական գարունը, նրա ազատ, բազմակողմանի և անսահման զարգացման ժամանակաշրջանը։ Սովետական մարդիկ օրինական հպարտությամբ են ոտք դնում կոմունիզմի մատույցները, որովհետև իրենք հանդիսանում են աշխարհում առաջին սոցիալիստական պետության քաղաքացիները, աշխատավորների դարավոր ձգտումները իրականացրած՝ հաղթանակած սոցիալիզմի, խաղաղության, ժողովուրդների իրավահավասարության ու բարեկամության երկրի քաղաքացիները։

Կապիտալիզմից դեպի սոցիալիզմ մարդկության համաշխարհային պատմական շրջադարձը սկսվեց 1917 թվականին՝ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայով։ Աշխարհի խոշորագույն երկրներից մեկում՝ Ռուսաստանում ճեղքելով իմպերիալիզմի ճակատը, խորտակելով շահագործող դասակարգի դարավոր տիրապետությունը, Մեծ Հոկտեմբերը հաստատեց պրոլետարիատի դիկտատուրա, ստեղծեց նոր տիպի պետություն՝ Սովետական պետությունը, նոր տիպի դեմոկրատիա՝ դեմոկրատիա աշխատավորների համար։ Ռևոլյուցիայի ծնունդ բանվորների և գյուղացիների իշխանությունը երկիրը դուրս բերեց արյունահեղ, եղբայրասպան իմպերիալիստական պատերազմից, Ռուսաստանի ժողովուրդներին ազատագրեց օտարերկրյա կապիտալի կողմից ստրկացվելու սպառնալիքից։

Հոկտեմբերյան ռևոլյուցիան նախկինում ճնշված բազմաթիվ ժողովուրդների հետ միասին ալեկոծեց, ոգեշնչեց, ոտքի հանեց, վերածննդի, նոր ու ազատ կյանքի կոչեց նաև բազմաչարչար հայ ժողովրդին։

Դա 41 տարի առաջ էր։

1920 թվականի նոյեմբերի 29-ին Հայաստանի ապստամբ բանվորներն ու գյուղացիները, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, ռուս մեծ ժողովրդի եղբայրական օգնությամբ ռևոլյուցիոն մարտերում տապալեցին դաշնակների ատելի տի-

րապետությունը։ Խոշտանգված հայկական հողի վրա ծածանվեց Սովետների ալ կարմիր դրոշը՝ ազատության, խաղաղ աշխատանքի ու երջանկության խորհրդանիշը։ Ազատագրված հայ ժողովուրդը իր երախտագիտության առաջին խոսքն ուղղեց մեծ բարեկամ և ուսուցիչ Վ. Ի. Լենինին։ Սովետական իշխանության հաղթանակի առթիվ ջերմորեն շնորհավորելով Հայաստանի աշխատավորներին, նորաստեղծ ռեսպուբլիկայի Ռազմառևոլյուցիոն կոմիտեի նախագահ ընկ. Ս. Կասյանի անունով ուղարկված հեռագրում մեծ Լենինը հաղորդեց. «Հանձինս Ձեզ՝ ողջունում եմ իմպերիալիզմի ճնշումից ազատագրված աշխատավորական Սովետական Հայաստանին»։

Ազատագրվելով սոցիալական և ազգային ճնշման դարավոր կապանքներից, հայ ժողովուրդը ձեռնամուխ եղավ իր նոր կյանքի կառուցմանը։ Հեշտ չէր նոր, սոցիալիստական կյանք կառուցել Հայաստանի ավերված հողում։ Նախառևոլյուցիոն Հայաստանի առանց այն էլ խղճուկ էկոնոմիկան դաշնակների տիրապետության տարիներին լիակատար անկման էր հասել։ Դժվարությունները սաստկանում էին նաև նրանով, որ իմպերիալիստները և նրանց



մինչև վերջ չջախջախված վարձկանները՝ դաշնակները, ոչ մի կերպ չէին ուզում հաշտվել Սովետական Հայաստանի ծննդյան պատմական փաստի հետ, ուստի և ձգտում էին ամեն կերպ ոչնչացնել նորաստեղծ սովետական կարգերը, վերականգնել հինը։ Այդ նպատակով նրանք կազմակերպում էին խռովություններ, սաբոտաժ, տեռոր, դիմում էին ամեն տեսակ ստոր դավադրությունների։ Սակայն ոչ արտաքին և ոչ էլ ներքին թշնամիների մեքենայությունները չէին կարող կանգնեցնել ռևոլյուցիայի ուժով գիտակցական պատմական ստեղծագործության բարձրացված հայ ժողովրդի առաջընթացը՝ ճնշումից ու կեղեքումից ազատ նոր հասարակարգի կառուցման ճանապարհին։

Չնայած իմպերիալիստական և քաղաքացիական պատերազմների հետևանքով երկրում ստեղծված ծանր դժվարություններին, Սովետական Ռուսաստանի կառավարությունը, Վ. Ի. Լենինի ցուցումով, նյութական և բարոյական հսկայական օգնություն ցույց տվեց երիտասարդ Սովետական Հայաստանին։ Դրա շնորհիվ արագորեն հաղթահարվեցին սովն ու համաճարակը, սկըս-

վեց վերականգնվել ավերված ժողովրդական տնտեսությունը:

*Սովետական Հայաստանում սոցիալիստական շինարարության ծավալման համար վիթխարի նշանակություն ունեցան հայ ժողովրդի մեծ բարեկամ Վ. Ի. Լենինի իմաստուն ցուցումները: Հայաստանում սովետական կարգեր հաստատվելուց մի քանի ամիս հետո ստացվեց Վ. Ի. Լենինի պատմական ծրագրային նամակը, որտեղ մեծ առաջնորդը նորաստեղծ ռեսպուբլիկայի կոմունիստների և բոլոր աշխատավորների առաջ մարտական խնդիր էր դնում.* իսկույն սկսել էլեկտրիֆիկացիայի և ոռոգման խոշոր աշխատանքներ, դրանով իսկ վերաստեղծել, վերածնել երկիրը, թաղել անցյալը, ամրապնդել անցումը դեպի սոցիալիզմ:

*Անցած 41 տարիների ընթացքում հայ ժողովուրդը, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, հետևողականորեն կենսագործելով լենինյան պատգամները, վիթխարի աշխատանքներ է կատարել երկրի էլեկտրիֆիկացման և ոռոգիչ ջրանցքների շինարարության ուղղությամբ: Մեր մարդկանց ստեղծագործ մտքով ու շինարար ձեռքով նոր հուն ու ընթացք ստացան լեռնային գետերը, դարեր շարունակ ապարդյուն հո-*



*սող ջրերը վերածվեցին լույսի ու բարիքի: Սովետական իշխանության տարիներին Հայաստանում կառուցվեցին 120 մեծ ու փոքր հիդրոէլեկտրակայաններ, որոնք մեկ օրում արտադրում են 1,5 անգամ ավելի շատ էլեկտրաէներգիա, քան արտադրվել է Հայաստանում ամբողջ 1913 թվականին: Սովետական Հայաստանը դարձել է համատարած էլեկտրիֆիկացիայի երկիր. Իլյիչի լամպերն այսօր պայծառորեն լուսավորում են ամենահեռավոր գյուղերն ու ավանները, էլեկտրաէներգիան ձուլում է պղինձ, ալյումին, ստեղծում կարբիդ, կաուչուկ, ցեմենտ, շարժման մեջ դնում մեր գործարանների ու ֆաբրիկաների ագրեգատները, կոլտնտեսությունների կալերի ու ֆերմաների մոտորները:*

*Որևէ երկրի տնտեսական ու կուլտուրական զարգացման աստիճանը առաջին հերթին որոշվում է նրա էներգետիկ արդյունաբերության մակարդակով, նրանով, թե տվյալ երկիրը ինչպիսի՞ էներգոզինվածություն ունի, բնակչության մեկ շնչին ընկնող էլեկտրաէներգիայի արտադրությամբ ի՞նչ տեղ է գրավում: Այդ տեսակետից ուշագրավ է հետևյալ համեմատությունը: Բնակչության մեկ շնչի հաշվով էլեկտրաէներգիայի արտադրությու-*

նը 1960 թվականին Սովետական Հայաստանում կազմեց 1.478 կիլովատ-ժամ, այսինքըն ավելի, քան Իտալիայում, Ճապոնիայում, Դանիայում և կապիտալիստական այլ երկրներում։ Իսկ Արաքսի այն ափին գտնվող Թուրքիայի համեմատությամբ Հայաստանը մեկ շնչին ընկնող էլեկտրաէներգիայի արտադրությամբ գերազանցում է 15 անգամ, Իրանին՝ ավելի քան 32 անգամ։

Լենինյան էլեկտրիֆիկացիան իրոք վերածնեց մեր երկիրը։ Նախկինից ժառանգություն մնացած կիսատնայնագործական մի քանի ձեռնարկությունների դիմաց անցած քառասունմեկ տարիների ընթացքում կառուցվեցին ժամանակակից տեխնիկայով հագեցված հարյուրավոր գործարաններ ու ֆաբրիկաներ, ստեղծվեցին արդյունաբերության բազմաթիվ նոր ճյուղեր, հետախուզվեցին և լույս աշխարհ հանվեցին ընդերքի անբավ հարուստ գանձերը։ Երբեմնի հետամնաց Հայաստանը այժմ սեփական մարկայով Հայրենիքին տալիս է գունավոր մետաղներ, տարբեր տիպի ժամանակակից հաստոցներ, ուժային տրանսֆորմատորներ, կոմպրեսորներ, գեներատորներ, էլեկտրաշարժիչներ, շարժական էլեկտրակայաններ, սինթետիկ կաուչուկ, ավտոդողեր, պլաստ-



մասսաներ, հանքային պարարտանյութեր, զանազան քիմիկատներ, շինանյութեր, հագուստեղեն, կոշկեղեն, գինի, կոնյակ, պահածոներ, արդյունաբերական արտադրանքի հազարավոր տեսակներ։

Սովետական Հայաստանի ձեռնարկություններում արտադրվող մեքենաներն ու սարքավորումներն արտահանվում են Եվրոպայի, Ասիայի և Աֆրիկայի 37 երկրներ։ Հայաստանը արտասահմանյան երկրներին ցույց է տալիս տեխնիկական օգնություն։ Օրինակ, Իրաքի Ռեսպուբլիկային տեխնիկական օգնություն է ցույց տրվում էլեկտրատեխնիկական արդյունաբերություն ստեղծելու գործում։

Անցած 41 տարիների ընթացքում թե ինչպիսի վիթխարի աճ է ունեցել մեր ռեսպուբլիկայի արդյունաբերությունը, պերճախոս կերպով ցույց են տալիս հետևյալ թվերը։ Այս տարվա արդյունաբերական արտադրանքի արտադրության ծավալը ավելի քան 70 անգամ գերազանցեց 1913 թվականի մակարդակը։ Ընթացիկ տարում Սովետական Հայաստանը կթողարկի 2,6 անգամ շատ մետաղահատ հաստոցներ, քան 1913 թվականին թողարկել է ամբողջ ցարական Ռուսաստանը։ Միայն Երևանի արդյունաբերական

շրջանը այժմ մեկ օրում կրկնակի անգամ ավելի արտադրանք է թողարկում, քան դաշնակների տիրապետության ժամանակ ամբողջ Հայաստանը՝ մեկ տարում։

Ամբողջովին փոխվել է հայկական գյուղի դեմքը։ Երկրի սոցիալիստական ինդուստրացումը, կոլտնտեսային կարգերի հաղթանակը հաստատուն հիմքեր ստեղծեցին գյուղատնտեսության վերելքի, գյուղի աշխատավորների բարեկեցիկ ու կուլտուրական կյանքի համար։ Գյուղատնտեսության մեքենայացումը հնարավորություն տվեց չորացնել և յուրացնել տասնյակ հազարավոր հեկտար ճահիճներ ու ճահճային հողեր, կառուցել 110 խոշոր ջրանցքներ։ Ռեսպուբլիկայի ոռոգելի հողերի տարածությունները 1919 թվականի համեմատությամբ ավելացել են մոտավորապես չորս անգամ և ներկայումս կազմում են ավելի քան 240 հազար հեկտար։ Դրա շնորհիվ ռեալ պայմաններ ստեղծվեցին խաղողագործության, պտղաբուծության և տեխնիկական կուլտուրաների մշակության արագ զարգացման համար։

Իրագործելով գյուղատնտեսության շեշտակի վերելքն ապահովող՝ ՍՄԿՊ Կենտկոմի նշած միջոցառումները, կոլտնտեսային գյուղի աշխատողները ռեսպուբլիկայի համար



բարձր պատիվ նվաճեցին։ Պարտիան և կառավարությունը գյուղատնտեսության բնագավառում ձեռք բերած նվաճումների համար Սովետական Հայաստանին պարգևատրեցին Լենինի շքանշանով։

Ինչպես նշեց Հայաստանի Կոմպարտիայի XXII համագումարը, մեր ռեսպուբլիկայի համար գյուղատնտեսության հետագա զարգացման ասպարեզում տնտեսապես ամենանպատակահարմար ուղղությունը գլխավորապես արդյունաբերական, խաղողագործության-պտղաբուծության, ինտենսիվ անասնաբուծության, բանջարաբուծության և ծխախոտագործության զարգացումն է։ Ուղեցույց ունենալով ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումի պատմական որոշումը, Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմը և Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետը, գյուղատնտեսության առաջավորների և մասնագետների լայն մասնակցությամբ, միջոցառումներ մշակեցին ռեսպուբլիկայի գյուղատնտեսության հետագա զարգացման համար։ Խաղողագործության և պտղաբուծության ասպարեզում գլխավոր խնդիրներն են՝ խաղողի և պտղատու այգիների ընդարձակումը և բերքատվության բարձրացումը։ Մինչև 1965 թվականը կոլտնտեսություններն ու սովխոզ-

ները պետք է գցեն խաղողի 18.000 հեկտար և պտղատու 15.900 հեկտար այգիներ։ Խաղողի տարեկան արտադրությունը կհասցվի 231 հազար տոննայի, պտուղներինը՝ 93 հազար տոննայի։ Ինտենսիվ անասնաբուծության զարգացման կոմպլեքս միջոցառումների կիրառումը պայմաններ կստեղծի առաջիկա 3—4 տարում մսի, կաթի, բրդի և մյուս մթերքների արտադրությունը արագորեն ավելացնելու համար։ Սննդամթերքների ասպարեզում բնակչության աճող պահանջմունքներն ապահովելու համար զարկ կտրվի բանջարաբուծության զարգացմանը և կարտոֆիլի արտադրության ավելացմանը։ Այդ նպատակով մերձքաղաքային շրջաններում, արդյունաբերական կենտրոնների և կուրորտների շուրջը կստեղծվեն օրինակելի մասնագիտացված տնտեսություններ, որոնք տարին բոլոր բնակչությանը կապահովեն թարմ բանջարեղենով։ Պլանտացիաների ընդարձակման և բերքատվության բարձրացման միջոցով աննախընթաց զարգացում կստանա հողագործության բարձր եկամտաբեր ճյուղերից մեկը՝ ծխախոտագործությունը։ Հացահատիկի արտադրությունը կավելացվի բերքատվության բարձրացման հաշվին։ Հատուկ ուշադրություն կնվիրվի հատի-



կացու եգիպտացորենի բերքատվության բարձրացմանը և նրա ցանքատարածությունների ընդարձակմանը։

Սոցիալիստական էկոնոմիկայի վերելքի հիման վրա տարեցտարի բարձրանում է մեր ժողովրդի նյութական բարեկեցությունը և կուլտուրայի մակարդակը։

Այս տարի ավարտվեց ռեսպուբլիկայի բանվորների ու ծառայողների փոխադրումը 7-ժամյա և 6-ժամյա կրճատ աշխատանքային օրվա, զգալիորեն բարձրացվեց ցածր վարձատրվող բանվորների ու ծառայողների աշխատավարձը։ Շարունակվում է հարկերի պլանաչափ վերացումը։

Աշխատավորների նյութական բարեկեցության բարձրացման չափանիշ է ազգային եկամտի աճը։ Հայկական ՍՍՌ ազգային եկամուտը, 1960 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, աճեց ավելի քան 40 տոկոսով։ Մինչև յոթնամյակի վերջը ռեսպուբլիկայի ազգային եկամուտը կաճի ավելի քան երկու անգամ։

Ռեսպուբլիկայի աշխատավորների ընդհանուր եկամուտներն ավելանալու հիման վրա տարեցտարի աճում է ժողովրդական սպառման ծավալը։ Այսպես, օրինակ, 1960 թվականին, 1959 թվականի համեմատությամբ,

բնակչությանը վաճառվեցին 10 տոկոսով ավելի միս, երշիկեղեն և մսամթերքներ, 12 տոկոսով ավելի յուղ, 15 տոկոսով ավելի կաթ և կաթնամթերք, 10 տոկոսով ավելի բամբակե գործվածքներ, 11 տոկոսով ավելի հագուստեղեն և սպիտակեղեն, 28 տոկոսով ավելի տնային սառնարաններ, 31 տոկոսով ավելի լվացքի մեքենաներ։

Մեծ աշխատանքներ են կատարվում աշխատավորների բնակարանային և կուլտուր-կենցաղային պայմանները բարելավելու ուղղությամբ։ Միայն վերջին մեկ ու կես տարում պետության միջոցներով ռեսպուբլիկայում կառուցվել և շահագործման են հանձնվել 543 հազար քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի շենքեր, կամ ավելի քան 10 հազար 400 բնակարան։ Բացի այդ, բանվորներն ու ծառայողները իրենց միջոցներով և պետական վարկի օգնությամբ կառուցել են 295 հազար քառակուսի մետր տարածությամբ տներ, իսկ կոլտնտեսականներն ու գյուղական ինտելիգենցիան կառուցել են ավելի քան 11 հազար տուն։ Այդ նույն ժամանակամիջոցում պետական միջոցներով կառուցվել են դպրոցական շենքեր՝ 12 հազար 700 աշակերտի համար, նախադպրոցական-մանկական հիմնարկներ՝



1.700 տեղով։ Կոլտնտեսություններն ու սովխոզները կառուցել են դպրոցներ և նախադպրոցական մանկական հիմնարկներ՝ 2.750 տեղով։ Բնական և հեղուկ գազով գազիֆիկացվել է 27 հազար 500 բնակարան։ Արդյունաբերական ձեռնարկություններին զուգահեռ, ծավալուն աշխատանքներ են տարվում կոմունալ-կենցաղային սպասարկման հիմնարկությունների գազիֆիկացման ուղղությամբ։

Հսկայական միջոցներ են հատկացվում ժողովրդական առողջապահության գործին, մոր և մանկան հիմնարկների պահպանությանը և սոցիալական ապահովությանը։ 1913 թվականին Հայաստանում կար ընդամենը 6 հիվանդանոց և 73 բժիշկ։ Ներկայումս Սովետական Հայաստանում աշխատում են 4.500 բժիշկ։ Մեզ մոտ յուրաքանչյուր 10 հազար բնակչին ընկնում է երկու անգամ շատ բժիշկ, քան ԱՄՆ-ում, 2,5 անգամ շատ, քան Անգլիայում, գրեթե 9 անգամ շատ, քան Թուրքիայում և 14 անգամ շատ, քան Իրանում։ Ռեսպուբլիկայում զգալիորեն ավելացել է ծնունդը, խիստ կրճատվել մահացությունը։ Սովետական իշխանության տարիներին Հայաստանի բնակչությունն աճել է ավելի քան 2,5 անգամ։

Մեծ են Սովետական Հայաստանի նվաճումները ժողովրդական կրթության, գիտության ու կուլտուրայի բնագավառներում։ Լենինյան ազգային քաղաքականության հետևողական կենսագործման շնորհիվ երկրում կատարվեց իսկական կուլտուրական ռևոլյուցիա։ Սովետական Հայաստանը համատարած գրագիտության ռեսպուբլիկա է։ Եթե նախասովետական շրջանում մեզ մոտ սովորում էր միջին հաշվով 35 հազար երեխա, ապա այժմ ռեսպուբլիկայի մասսայական դպրոցներում սովորողների թիվը 340 հազարից ավելի է։ Նախասովետական Հայաստանը չուներ ոչ մի բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություն, իսկ այժմ ռեսպուբլիկայի 10 բուհերում և 38 տեխնիկումներում ուսանում է 37 հազար մարդ։ Սովետական Հայաստանում յուրաքանչյուր 10 հազար բնակչին ընկնում է բարձրագույն դպրոցի 105 ուսանող, այնինչ, Ֆրանսիայում նույնքան բնակչությանն ընկնում է 40 ուսանող, Իտալիայում 34, Արևմտյան Գերմանիայում 31։ Ռեսպուբլիկայում լայնորեն կիրառվում է հեռակա և երեկոյան ուսուցումը բարձրագույն և միջնակարգ դպրոցներում։ Հետևողական աշխատանքներ են տարվում ութամյա պարտադիր կրթությանն անցնելու, կյանքի հետ



դպրոցի կապը ամրապնդելու ուղղությամբ։

Սովետական հասարակության առաջընթացի վճռական պայմաններից են գիտությունն ու կուլտուրան։ Մեր ռեսպուբլիկայի 79 գիտական հիմնարկներում բեղմնավոր աշխատանք են կատարում 3.409 գիտաշխատող. նրանք իրենց ավանդն են մուծում սովետական գիտության ու տեխնիկայի զարգացման գործում։ Միայն վերջին մեկ և կես տարում Գիտությունների ակադեմիայի սիստեմում ստեղծվել են ռադիոֆիզիկայի և էլեկտրոնիկայի, էներգետիկայի, ջրային պրոբլեմների, միկրոբիոլոգիայի, բիոքիմիայի, գեոֆիզիկայի և ինժեներական սեյսմոլոգիայի, կարդիոլոգիայի և սրտային վիրաբուժության ինստիտուտներ։

Ռեսպուբլիկայի աշխատավորների տրամադրության տակ գտնվում է ակումբների, կուլտուրայի պալատների, գրադարանների, կինոթատրոնների լայն ցանց։ Բնակչության կենցաղի մեջ են մտել ռադիոն և հեռուստատեսությունը։ 1913 թվականին Հայաստանում կար ընդամենը 13 գրադարան, որոնց գրքերի ընդհանուր ֆոնդը կազմում էր 9.000 հատոր, իսկ ներկայումս միայն մասսայական գրադարանների թիվը հասնում է 1.150-ի, որոնց գրքային ֆոնդը 7 միլիոն հատորից անցնում է։

Ահա թե հայ ժողովուրդը ինչպիսի հաջողությունների է հասել իր ազգային վերածննդի 41 տարիների ընթացքում։

Հայաստանում սովետական կարգերի հաստատումը տեղի ունեցավ մեր պարտիայի երկրորդ Ծրագրի ընդունումից անմիջապես հետո։ Սովետական Միության եղբայրական ժողովուրդների ընտանիքում հայ ժողովրդի էկոնոմիկայի, գիտության և կուլտուրայի բուռն ծաղկումը պարտիայի լենինյան Ծրագրի կենսագործման արգասիք է։ ՍՄԿՊ XXII համագումարի կողմից հաստատված և բազմամիլիոն սովետական ժողովրդի հավանությանն արժանացած պարտիայի նոր, երրորդ Ծրագիրը ինչպես ամբողջ երկրի, այնպես էլ մեր ռեսպուբլիկայի առջև բաց է անում կոմունիստական շինարարության պայծառ հեռանկարներ։

Յոթնամյա պլանին համապատասխան հաջողությամբ զարգանում են մեր ռեսպուբլիկայի էկոնոմիկան և կուլտուրան։ Այդ են վկայում անցած երեք տարվա աշխատանքի արդյունքները։ Սակայն կյանքի բոլոր բնագավառներում զարգացման ավելի հոյակապ ծրագիր է նախատեսվում ժողովրդական տնտեսության զարգացման առաջիկա քսանամյակի՝ 1961—1980 թվականների հե-



ռանկարային պլանով։ Բավական է ասել, որ առաջիկա 20 տարում ռեսպուբլիկայի արդյունաբերական արտադրանքի ծավալը կըմեծանա մոտավորապես 13 անգամ։ Հատկապես արագ տեմպերով կզարգանան քիմիական արդյունաբերությունը և մեքենաշինությունը, կկառուցվեն ավելի քան 34 միլիոն քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակարաններ, մեծ թվով դպրոցներ, առողջապահական և կուլտուր-կենցաղային սպասարկման հաստատությունների շենքեր։ Այդ ժամանակաշրջանում գյուղատնտեսական արտադրանքի ծավալը կաճի ավելի քան 3,5 անգամ։ Ազգային եկամուտը կաճի 12 անգամ։

Երախտապարտ հայ ժողովրդի անունից ՍՄԿՊ XXII համագումարում ՀԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Յա. Զարոբյանը սրտագին շնորհակալություն հայտնեց Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեին, Սովետական կառավարությանը և թանկագին Նիկիտա Սերգեևիչ Խրուշչովին, որի անձնական մասնակցությունը, բարեկամական խորհուրդներն ու ողջույնի ջերմ խոսքերն է՛լ ավելի բերկրալի, է՛լ ավելի վառ ու բովանդակալից դարձրին Սովետական Հայաստանի 40-ամյակի տոնակատարությունը։

Հայ ժողովրդի տոնի ժամանակ ընկեր Ն. Ս. Խրուշչովը բարձր գնահատական տվեց Հայաստանի աշխատավորների նվաճումներին, օգնեց լուծելու ռեսպուբլիկայի համար կենսականորեն կարևոր մի շարք հարցեր, մեր ռեսպուբլիկայի առջև դրեց նոր, մեծ խնդիրներ։ Ոգեշնչված այդ բարձր գնահատականով, Հայաստանի բանվորները, կոլտնտեսականները, մասնագետներն ու գիտնականները սկսեցին աշխատել էլ ավելի մեծ եռանդով ու խանդավառությամբ։

Մեր ռեսպուբլիկայում ընկեր Ն. Ս. Խրուշչովի գտնվելը մեծ դպրոց հանդիսացավ բոլորիս համար։ Հայ ժողովուրդը Նիկիտա Սերգեևիչին էլ ավելի սիրեց նրա իմաստունության ու պարզության համար, ժողովրդի կյանքին մոտ լինելու և լավ ճանաչելու համար, նրա անսպառ եռանդի և սովետական բոլոր մարդկանց բարօրության ու երջանկության մասին անխոնջ հոգատարության համար։

Պարտիայի XXII համագումարում ընկ. Յա. Զարոբյանն ասաց, որ ավելի քան մեկ միլիոն հայեր ապրում են զանազան կապիտալիստական երկրներում, ուր նրանք հարկադրված են եղել տեղափոխվել, փրկվելով ֆիզիկական բնաջնջումից, գլխավորապես



առաջին համաշխարհային պատերազմի ժամանակ։ Երևանում եղած ժամանակ ընկեր Ն. Ս. Խրուշչովը հանդիպումներ ունեցավ արտասահմանյան առաջադեմ հայերի ներկայացուցիչների հետ։ Այդ ջերմ, սրտագին հանդիպման և ռեսպուբլիկայի 40-ամյակի տոնակատարության անջնջելի տպավորության ներքո արտասահմանյան առաջադիմական հայկական շատ թերթեր ճիշտ ու հիացական արձագանքներ տվեցին Սովետական Հայաստանի նվաճումների մասին։ Բեյրութում հրատարակվող «Արարատ» առաջադիմական թերթը գրել է. «... Կարող ենք հաստատել, որ այս ամենը երազ չէ, այս ամենը իսկական շոշափելի իրողություն է»։

Մեծ Սովետական Միության ժողովուրդների եղբայրական ընտանիքում Սովետական Հայաստանի բարգավաճումը մագնիսի պես դեպի իրեն է ձգում հայ ժողովրդի լավագույն որդիներին ու դուստրերին։ Վերջին տարիներս զգալիորեն ավելացել է կապիտալիստական երկրներում ապրող հայերից ստացվող խնդրանքների հոսանքը։ Այդ խնդրանքներում ջերմ ցանկություն է հայտնըվում թողնել կապիտալիստական «դրախտը» և գալ իրենց հայրենիքը՝ Սովետական

Հայաստան։ Սովետական կառավարության աջակցությամբ և մեծ օգնությամբ որոշվել է 1962 թվականից սկսած աստիճանաբար կազմակերպել արտասահմանյան երկրներից վերադառնալու ցանկություն հայտնած հայերի հայրենադարձությունը։ Սովետական Հայաստանում ամեն ինչ կարվի, որպեսզի նրանց համար ստեղծվի նորմալ կյանքի ու ստեղծագործական աշխատանքի անհրաժեշտ պայմաններ։

Սովետական Հայաստանի աշխատավորները, ոգեշնչված պարտիայի նոր Ծրագրով, ՍՄԿԿ XXII համագումարի որոշումներով զինված, սովետական ժողովուրդների եղբայրական համագործակցությամբ այսուհետև էլ ավելի մեծ եռանդով ու խանդավառությամբ կպայքարեն կոմունիզմի ծավալուն շինարարության հոյակապ խնդիրների հաջող կենսագործման համար։

---



# Ո՞ՒՄ ՕԳՏԻՆ ԵՆ ԽՈՍՈՒՄ ԹՎԵՐՆ ՈՒ ՓԱՍՏԵՐԸ

Սիրով ու հպարտությամբ լսեց սովետական ժողովուրդը հարազատ Կոմունիստական պարտիայի XXII համագումարում ընկ. Ն. Ս. Խրուշչովի այն խոսքերը, որ երկու սիստեմների խաղաղ մրցության ընթացքում կապիտալիզմը բարոյական խոր պարտություն կրեց բոլոր ժողովուրդների աչքում։ Հասարակ մարդիկ,— ասաց նա,— օրեցօր համոզվում են, որ կապիտալիզմը ի վիճակի չէ լուծելու մարդկության առջև կանգնած հասունացած պրոբլեմներից ոչ մեկը։ Ավելի ու ավելի ակնառու է դառնում, որ միայն սոցիալիզմի միջոցով կարելի է գտնել այդ պրոբլեմների լուծումը։ Ահա թվեր և փաստեր այդ մասին։

Սոցիալիստական երկրները 1960 թվականին, 1937 թվականի համեմատությամբ, արդյունաբերական արտադրության ծավալը ավելացրել են 6,8 անգամ, մինչդեռ կապիտալիստական երկրները՝ 2,5 անգամից էլ պակաս։

Սոցիալիզմի երկրների բաժինը համաշխարհային արդյունաբերական արտադրության մեջ 1960 թվական-

նին հասավ մոտավորապես 36 տոկոսի՝ 1955 թվականի 27 տոկոսի դիմաց։

Սոցիալիստական երկրներում չկա և չի կարող լինել գործազրկություն, այնինչ կապիտալիստական երկրներում և հատկապես ԱՄՆ-ում օրեցօր աճում է գործազրկությունը։ ԱՄՆ-ում վերջին հինգ տարում լրիվ գործազուրկների թիվը հասել է ավելի քան 3 միլիոնի։

Սոցիալիստական համագործակցության երկրներում տասը տարվա ընթացքում, 1950 թվականից մինչև 1960 թվականը, ապրանքաշրջանառությունն աճեց ավելի քան երեք անգամ։ Նույն ժամանակամիջոցում կապիտալիստական երկրների ապրանքաշրջանառությունն ավելացավ միայն երկու անգամ։

Սոցիալիստական երկրներում երբեք չի կարող լինել արտադրության ճգնաժամ, այնինչ կապիտալիզմի գլխավոր երկիրը՝ ԱՄՆ-ը, հինգ տարվա ընթացքում ունեցել է արտադրության երկու ճգնաժամային անկում, իսկ ընդամենը հետպատերազմյան ժամանակաշրջանում այնտեղ նշվել է չորս այդպիսի անկում։

Կապիտալիստական երկրներում և հատկապես ԱՄՆ-ում անընդհատ ավելանում են ռազմական ծախսերը։ ԱՄՆ-ի միայն ուղղակի ռազմական ծախսերը 5 տարում անցել են 220 միլիարդ դոլարից, իսկ ՆԱՏՕ-ի բոլոր երկրները վերջին տասը տարում սպառազինու-



թյունների մրցավազքի վրա ծախսել են ավելի քան 500 միլիարդ դոլար։

Վեց տարում ՍՍՌՄ-ում պողպատի ձուլումն ավելացել է 26 միլիոն տոննայով, որը գերազանցում է Անգլիայի պողպատի տարեկան ամբողջ արտադրությունը։

Մեր երկրում նույն ժամանակամիջոցում նավթի արդյունահանումն աճել է 95 միլիոն տոննայով, իսկ էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ 157 միլիարդ կիլովատ-ժամով։

Մեզ մոտ տարեցտարի ավելանում է սպառման առարկաների արտադրությունը։ Միայն յոթնամյակի երեք տարում պլանից դուրս թողարկվել են ավելի քան մեկ միլիարդ մետր գործվածքներ և մոտ 70 միլիոն զույգ կոշիկ։

Մեր երկրում 1956—1961 թվականներին պետական կապիտալ ներդրումները կազմել են 156 միլիարդ ռուբլի։ Դա ավելի է, քան ներդրվել է Սովետական իշխանության բոլոր տարիներին մինչև պարտիայի XX համագումարը։

Նույն ժամանակաշրջանում շահագործման են հանձնվել մոտ 6 հազար պետական խոշոր ձեռնարկություններ, անց են կացվել ավելի քան երեսուն հազար կիլոմետր նավթամուղ և գազամուղ խողովակաշարներ։

Խոշոր հաջողություններ են ձեռք բերված աշխատանքի արտադրողականության բարձրացման բնագավառում։ 1961 թվականին արդյունաբերության մեջ 1955 թվականի մակարդակն այն կգերազանցի 43 տոկոսով, շինարարության մեջ՝ 60 տոկոսով, երկաթուղային տրանսպորտում՝ 56 տոկոսով։ Արտադրանքի ինքնարժեքն իջեցվել է մոտավորապես 11 տոկոսով։

Սովետական Միությունը ներկայումս ԱՄՆ-ից առաջ է անցել երկաթաքարի և ածխի հանույթի ծավալով, կոքսի, հավաքովի երկաթբետոնի, մագիստրալային ջերմաքարշերի և էլեկտրաքարշերի, սղոցանյութերի, բրդե գործվածքների, շաքարի, կենդանական յուղի, ձկնեղենի և մի շարք այլ մթերքների ու առարկաների արտադրությամբ։

Մեր երկրում արդյունաբերական արտադրության աճի միջին տարեկան տեմպերը 1956—1960 թվականներին կազմել են 10,2 տոկոս, ԱՄՆ-ում՝ 2,3 տոկոս։

Եթե մեզ մոտ բնակչության մեկ շնչին ընկնող արդյունաբերական արտադրանքի միջին տարեկան արտադրությունն ավելացել է 8,2 տոկոսով, ապա ԱՄՆ-ում այն կազմում է 0,6 տոկոս։

Մեզ մոտ վերջին 6 տարում կապիտալ ներդրումների միջին տարեկան աճը կազմել է 12 տոկոս, իսկ ԱՄՆ-ում աճ չի եղել և նույնիսկ որոշ չափով նվազում է տեղի ունեցել։



Բնակչության եկամուտները մեր երկրում 1960 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, ավելացել են 24 միլիարդ ռուբլով։

1960 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, ՍՍՌՄ ազգային եկամուտը աճել է ավելի քան մեկ ու կես անգամ, իսկ վերջին տասը տարում բնակչության մեկ շնչի հաշվով ազգային եկամուտն ավելացել է 2,2 անգամ։

Հինգ տարում բանվորների և ծառայողների աշխատավարձի բարձրացման վրա ծախսվել է մոտ 4 միլիարդ ռուբլի։

Կապիտալիստական երկրներում, հատկապես ԱՄՆ-ում, անընդհատ ավելանում է հարկային բեռն աշխատավորների վրա, այնինչ մեր երկրում վերացվում են հարկերը։ Անցյալ տարվա հոկտեմբերից մեր երկրում սկսվեց հարկերի վերացումը, որի՝ շնորհիվ երկու տարում աշխատավորների եկամուտն ավելացավ 760 միլիոն ռուբլով։

Բնակարանային շինարարության ծավալի և տեմպերի գծով Սովետական Միությունն աշխարհում գրավում է առաջին տեղը։ Բնակչության հազար մարդու հաշվով Սովետական Միության մեջ այժմ երկու անգամ ավելի բնակարան է կառուցվում, քան

ԱՄՆ-ում և Ֆրանսիայում, և ավելի քան երկու անգամ շատ, քան Անգլիայում ու Իտալիայում։

Սովետական Միությունն աշխարհում առաջինը արձակեց երկրի արհեստական արբանյակը։ Սովետական մարդիկ առաջինը դեպի տիեզերք հաղթական թռիչքներ կատարեցին։

Այս տարի Սովետական Միության մեքենաշինական և մետաղամշակման արդյունաբերությունը 350 անգամ շատ արտադրանք թողարկեց, քան 1913 թվականին և գրեթե 1000 անգամ շատ, քան 1919 թվականին։

Այս տարի մեր երկրում մոտավորապես 160 անգամ շատ էլեկտրաէներգիա կարտադրվի, քան 1913 թվականին և 650 անգամ շատ, քան 1919 թվականին։ Ներկայումս ՍՍՌՄ-ում արտադրվում է ավելի քան 300 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։

Նշանակալից հաջողությունների է հասել մեր երկրի գյուղատնտեսությունը։ 1956—1960 թվականներին, նախորդ հնգամյակի համեմատությամբ, գյուղատնտեսության մեջ կապիտալ ներդրումների ընդհանուր գումարն աճեց և 13,9 միլիարդ ռուբլուց հասավ 27,2 միլիարդ ռուբլու։

---



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Կոմունիզմ կառուցողների համագումարը

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի հաշվետվությունը Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXII համագումարին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հոկտեմբերի 18-ի և 19-ի համարներում։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Ծրագրի մասին, *զեկուցում Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXII համագումարում, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հոկտեմբերի 20-ի և 21-ի համարներում։*

ՍՄԿԿ XXII համագումարի որոշումը ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի հաշվետվության առթիվ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հոկտեմբերի 29-ի համարում։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Եզրափակման խոսք պարտիայի XXII համագումարում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հոկտեմբերի 29-ի համարում։*

Ինֆորմացիոն հաղորդագրություններ՝ ՍՄԿԿ Կենտ–

ռոնական Կոմիտեի 1961 թվականի հոկտեմբերի 31-ի պլենումի, ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Վերստուգիչ հանձնաժողովի, ՍՄԿՊ Կենտկոմի ՌՍՖՍՌ բյուրոյի և ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի կազմի մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի նոյեմբերի 1-ի համարում։*

Ինֆորմացիոն նյութեր ՍՄԿՊ XXII համագումարի աշխատանքների մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հոկտեմբերի 18-ից մինչև նոյեմբերի 2-ի համարներում։*

## 2. Մարդկության նվիրական երազանքի կենսագործման ծրագիրը

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Մեր պարտիայի Ծրագրի նախագիծը, *Երկեր, հատ. 4, էջ 283—319, Հայպետհրատ, 1948։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Ծրագրի մասին, *զեկուցում Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXII համագումարում, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հոկտեմբերի 20-ի և 21-ի համարներում։*

Կոմունիզմ կառուցողների համագումարը, *«Պրավդա»-ի 1961 թվականի հոկտեմբերի 20-ի առաջնորդող հոդվածը, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հոկտեմբերի 22-ի համարում։*

Ինֆորմացիոն նյութեր ՍՄԿՊ XXII համագումարի աշխատանքների մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հոկտեմբերի 22—31-ի համարներում։*



Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Ծրագիրը, *Հայպետհրատ, 1961 թ.։*

## 3. Պարտիայի կազմակերպական հզոր զենքը

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— ՌՍԴ(բ)Պ-ի Կանոնադրության նախագիծը, *Երկեր, հատ. 6, էջ 606—608, Հայպետհրատ, 1949 թ.։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Լենինյան պարտիան կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարի կազմակերպիչն է, *ՍՄԿՊ XXII համագումարին տված հաշվետու զեկուցումից, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հոկտեմբերի 19-ի համարում։*

Ֆ. Ռ. ԿՈԶԼՈՎ— Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կանոնադրության փոփոխությունների մասին, *զեկուցում ՍՄԿՊ XXII համագումարում, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հոկտեմբերի 29-ի համարում։*

Ինֆորմացիոն նյութեր ՍՄԿՊ XXII համագումարի աշխատանքների մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հոկտեմբերի 29—31-ի համարներում։*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կանոնադրությունը, *Հայպետհրատ, 1961 թ.։*

## 4. Մարքսի, Էնգելսի, Լենինի ուսմունքը ամենազոր է, որովհետև այն ճիշտ է

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Կ. ՄԱՐՔՍ և Ֆ. ԷՆԳԵԼՍ— Կոմունիստական պարտիայի մանիֆեստը, *Հայպետհրատ, 1960 թ.։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Կոմունիզմ, *Երկեր, հատ. 31, էջ 191—194, Հայպետհրատ, 1952 թ.:*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Մեր ռևոլյուցիայի մասին, *Երկեր, հատ. 33, էջ 566—571, Հայպետհրատ, 1952 թ.:*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Պարտիայի գաղափարական գործունեությունը, ժողովրդի կյանքի հետ կապի ամրապնդումը: Կոմունիստական շինարարության և ռևոլյուցիոն տեսության զարգացումը, *ՍՄԿՊ XXII համագումարին տված հաշվետու զեկուցումից, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հոկտեմբերի 19-ի համարում:*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Կոմունիզմը պարտիայի և ժողովրդի մեծ նպատակն է, *Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Ծրագրի մասին ՍՄԿՊ XXII համագումարում տված զեկուցումից, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հոկտեմբերի 20-ի համարում:*

## 5. Կոմունիզմի գաղափարները մղում են նորանոր սխրանքների

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի հաշվետվությունը Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXII համագումարին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հոկտեմբերի 18-ի և 19-ի համարներում:*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Ծրագրի մասին, *զեկուցում Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXII*



*համագումարում, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հոկտեմբերի 20-ի և 21-ի համարներում:*

Խոսում են ՍՄԿՊ XXII համագումարի պատգամավորները, *թղթակցություններ, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հոկտեմբերի 11-ի և 12-ի համարներում:*

Ռեսպուբլիկայի աշխատավորների արտադրական խանդավառությունը, *նյութեր ՍՄԿՊ XXII համագումարի պատվին ստանձնած պարտավորությունների կատարման մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հոկտեմբեր ամսի համարներում:*

ՅԱ. Ն. ԶԱՐՈԲՅԱՆ— Ճառ, արտասանած ՍՄԿՊ XXII համագումարի 1961 թվականի նոյեմբերի 21-ի երեկոյան նիստում, *տպագրված «Ս. Հ.»-ի հոկտեմբերի 24-ի համարում:*

Մեր գործերն ու խոսքերը քեզ, հարազատ պարտիա, *Ռեսպուբլիկայի աշխատավորների արտադրական խանդավառության մասին, նյութեր, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հոկտեմբերի 25-ի և 27-ի համարներում:*



Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

## ԲԱՑՎԱԾ Է

«Ագիտատորի բլոկնոտ»-ի 1962 թվականի բաժանորդագրությունը:

1 ամիսը— 15 կոպ.
6 ամիսը— 90 կոպ.
12 ամիսը— 1 ռուբ. 80 կոպ.
Մեկ համարը— 8 կոպ.

«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»

Отдел пропаганды и агитации
ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 22 1961 г.


ՎՖ 10387 պատվեր 568 Տպաքանակ 8203

Հանձնված է արտադրության 6/XI 1961 թ.։
Ստորագրված է տպագրության 11/XI 1961 թ.։

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության պոլիգրաֆարդյունաբերության և հրատարակչությունների գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։

Գինը 8 կոպ.